Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ




№ 7 Ա Պ Ր Ի Լ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԴ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:





# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԴԻՐԸ

## (Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 86-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Սովետական ժողովուրդը ամբողջ աշխարհի առաջավոր մարդկության հետ միասին տոնում է Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր, ռևոլյուցիայի հանճար, գիտության մեծ կորիֆեյ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 86-ամյակը:

Լենինը ծնվել է 1870 թվականի ապրիլի 22-ին Սիմբիրսկ (այժմ Ուլյանովսկ) քաղաքում: Դեռևս պատանեկան տարիներին, շփվելով աշխատավոր մարդկանց հետ, նա տեսավ բանվորների և գյուղացիների թշվառ, անտանելի վիճակը, տոգորվեց անհաշտ ատելությամբ դեպի ցարական բռնապետական ռեժիմը: 1887 թվականին, Կազանի համալսարանում սովորելու ժամանակ, ուսանողական ռևոլյուցիոն շարժմանը ակտիվ մասնակցելու համար Լենինը ձերբակալվեց:





«Ի՞նչ եք խռովություն սարքում, երիտասարդ։ Չէ՞ որ ձեր առաջ պատ է կանգնած», — ասաց Լենինին դեպի բանտ ուղեկցող պրիստավը։

«Պատ է, այո, բայց խարխուլ, հրի՛ր և փուլ կգա», — պատասխանեց Լենինը։

Լենինը ընտրեց ինքնակալության և կապիտալիզմի դեմ ռևոլյուցիոն պայքարի ուղին, իր կյանքը նվիրելով աշխատավորության ազատագրության գործին, կոմունիզմի մեծ գործին։

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, բացահայտելով հասարակության զարգացման օրենքները, գիտականորեն ցույց տվեցին, որ կապիտալիզմի կործանումը և սոցիալիզմի հաղթանակն անխուսափելի է։

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ամենահավատարիմ ու հետևողական աշակերտ և նրանց գործի մեծ շարունակող Վ. Ի. Լենինը խիզախորեն նոր ուղիներ բացեց ռևոլյուցիոն թեորիայում և պրակտիկայում, բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին զինեց ամեն կարգի բռնության և կեղեքման դեմ պայքարի հատու զենքով։

Լենինը փորձում և զարգացնում էր մարքսիզմը պատմական նոր դարաշրջանում՝ իմ-



պերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում։

Ձևակերպելով ռուսական ռևոլյուցիայի պատմական մեծագույն խնդիրը, Վ. Ի. Լենինը 1902 թվականին գրում էր. «Պատմությունն այժմ մեր առջև դրել է մերձավորագույն մի խնդիր, որ ամենառևոլյուցիոնն է հանդիսանում որևէ այլ երկրի պրոլետարիատի բոլոր մերձավորագույն խնդիրներից։ Այդ խնդրի իրականացումը, ոչ միայն եվրոպական, այլ նաև (կարող ենք մենք այժմ ասել) ասիական ռեակցիայի ամենահզոր նեցուկի խորտակումը ռուսական պրոլետարիատին կդարձնի միջազգային ռևոլյուցիոն պրոլետարիատի ավանգարդ»։ Լենինը ցույց տվեց, որ պրոլետարիատը կարող է կատարել իր պատմական այդ միսիան միայն այն ժամանակ, եթե նա ունենա իր իսկական մարքսիստական պարտիան։ Լենինը և նրա համախոհները համառ պայքար ծավալեցին բանվոր դասակարգի բազմաթիվ թշնամիների դեմ, ջախջախիչ քննադատության ենթարկեցին II Ինտերնացիոնալի օպորտունիստների, «էկոնոմիստների» և պարտիականության սկզբունքի մյուս հակառակորդների սխալ հայացքները, ընդգծելով, որ բոլոր գույնի օպորտունիստներն իրենց տա-

բերայնության քարոզով օբյեկտիվորեն ձգտում էին բանվորական շարժումը ենթարկել բուրժուազիայի շահերին: Լենինը, նախապատրաստելով Ռուսաստանում մարքսիստական պարտիայի ստեղծումը, բացահայտեց առաջավոր թեորիայի խոշոր նշանակությունը բանվորական շարժման համար: Նա մշակեց պարտիայի գաղափարական, կազմակերպական, տակտիկական և տեսական հիմքերը, ստեղծեց կուռ ուսմունք մարքսիստական պարտիայի մասին:

Լենինը գիտականորեն հիմնավորեց, որ մարքսիստական պարտիան բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից ջոկատն է, ռևոլյուցիոն թեորիայով զինված քաղաքական առաջնորդը, պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևը: Պարտիան՝ բանվոր դասակարգի այդ առաջավոր ջոկատը՝ դասակարգի միլիոնավոր մասսաների հետ ունեցած կապի մարմնացումն է, նա ուժեղ է իր միասնությամբ, երկաթյա կարգապահությամբ, անպարտիական մասսաների հետ ունեցած անխզելի կապով: Լենինը մշակեց պարտիական կյանքի հաստատուն նորմաները՝ պարտիայի Կանոնադրության խստագույն պահպանումը, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների



իրագործումը, պարտիայի շարքային անդամների ակտիվության ըստ ամենայնի զարգացումը, պարտիական կյանքի կարևորագույն հարցերի կոլեկտիվ քննարկումը:

Լենինը պարտիան դարձրեց այն ղեկավար ուժը, որը միավորեց միլիոնավոր աշխատավորների՝ ստեղծելով բանվոր դասակարգի միասնական ռևոլյուցիոն բանակ:

Ռուսաստանի բանվորների և գյուղացիների ազատագրության համար մղվող պայքարի ճանապարհին կարևոր էտապ էր 1905—1907 թ. թ. բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան: Ուսումնասիրելով և ընդհանրացնելով ռուսական ու միջազգային բանվորական ռևոլյուցիոն շարժման փորձը, Լենինը հստակորեն մշակեց բանվոր դասակարգի տակտիկան տվյալ ռևոլյուցիայում: Դատափետելով մենշևիկների հակամարքսիստական հայացքները, նա բազմակողմանիորեն հիմնավորեց այն գաղափարը, որ պրոլետարիատը կարող է և պետք է լինի բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի առաջնորդը: Լենինը նշում էր, որ պրոլետարիատը ամենառևոլյուցիոն և հետևողական դասակարգն է, ունի իր սեփական քաղաքական պարտիան և կենսականորեն շահագրգռված է ինքնակալության տապալմամբ: Ռևոլ-

ցիայի այդ ամենահզոր նեցուկի՝ ինքնակալության տապալումով պայմաններ էր ստեղծվում սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու համար։ Պրոլետարիատը ժողովրդական ռևոլյուցիայի առաջնորդի դերը կատարելու համար պետք է իր կողմը գրավի գյուղացիությանը և մասսաներից մեկուսացնի լիբերալ բուրժուազիային։ Նա սովորեցնում էր, որ բանվոր դասակարգի ղեկավարությամբ, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակի անհրաժեշտ պայմանն է։ Զարգացնելով մարքսիստական ուսմունքը պրոլետարիատի պայքարի տակտիկայի մասին, Լենինը բազմակողմանիորեն մշակեց զինված ապստամբության կազմակերպման, ցարիզմի տապալման, ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարության ստեղծման, այդ կառավարությանը սոցիալ-դեմոկրատիայի մասնակցության և ռևոլյուցիոն տակտիկայի մյուս հարցերը։ Սակայն պրոլետարիատի խնդիրները չէին սպառվում դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակով։ Լենինը գրում էր, որ դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակը պետք է հող պատրաստի սոցիալիստական ռևոլյուցիայի համար։ Նա մշակեց բուրժուա-դեմոկրատա-



կան ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու թեորիան, որպես հաղթանակի պարտադիր մոմենտ առաջադրելով պրոլետարիատի և քաղաքի ու գյուղի կիսապրոլետարական տարրերի դաշինք։

Լենինի մեծագույն ծառայությունը կայանում է նրանում, որ նա հայտնագործեց իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը և հանգեց այն հանճարեղ հետևության, որ սոցիալիզմի հաղթանակը հնարավոր է մեկ, առանձին վերցրած երկրում։ Վ. Ի. Լենինի այս հայտնագործությունը պրոլետարիատին տվեց պայքարի պարզ հեռանկար, նրան զինեց հաղթանակի նկատմամբ անհուն վստահությամբ։

Փարիզյան Կոմունայի և 1905 ու 1917 թվականների ռուսական ռևոլյուցիաների պատմական փորձի ընդհանրացման հիման վրա, Լենինը իր Ապրիլյան թեզիսներում հայտնագործեց Սովետների ռեսպուբլիկան որպես պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն պետական ձև։ Լենինի ղեկավարությամբ Կոմունիստական պարտիան մեր երկրի աշխատավորությանը հասցրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյու-

ցիայի հաղթանակին, որը մարդկության համաշխարհային պատմության մեջ բացեց նոր դարագլուխ՝ սոցիալիզմի և կոմունիզմի դարագլուխը: Մեր երկրում ստեղծվեց Սովետների ռեսպուբլիկա՝ բանվորների և գյուղացիների առաջին սոցիալիստական պետությունը: Լենինը գլխավորեց առաջին Սովետական կառավարությունը, մշակեց մեր երկիրը առաջավոր հզոր սոցիալիստական տերություն դարձնելու գիտականորեն հիմնավորված ծրագիրը: Երկրի ինդուստրացումը, ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը և կուլտուրական ռևոլյուցիայի անցկացումը այն խնդիրներն էին, որոնք առաջադրվեցին Վ. Ի. Լենինի կողմից որպես երկրի արմատական ռևոլյուցիոն վերափոխման ծրագիր: Լենինը լիովին համոզված էր, որ սովետական ժողովուրդը կարող է հաստատակամորեն ընթանալ սոցիալիստական և կոմունիստական շինարարության ուղիով: Նա գրում էր, որ «Մենք մատերիալ ունենք թե՛ բնական հարստություններով, թե՛ մարդկային ուժերի պաշարով, թե՛ այն հիանալի թափով, որ տվեց ժողովրդական ստեղծագործությանը մեծ ռևոլյուցիան,— որպեսզի



կարողանանք ստեղծել իրոք հզոր և լիառատ Ռուսիա»:

Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ սովետական ժողովուրդը վստահորեն ընթացավ պատմությանը դեռևս անհայտ ուղիներով: Հաղթահարելով սովը և երկրի քայքայվածությունը, ցարական Ռուսաստանից ժառանգություն մնացած տնտեսական հետամնացությունը, պարտիան և սովետական ժողովուրդը վերակառուցեցին ժողովրդական տնտեսությունը, երկիրը դարձնելով հզոր ինդուստրիալ-կոլտնտեսային տերություն: Պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց սոցիալիստական տնտեսակարգ, որը չգիտե ճգնաժամեր և գործազրկություն: ՍՍՌՄ ժողովուրդները համախմբվեցին մի եղբայրական ընտանիքում, աճեց, ամրապնդվեց և անհաղթահարելի ուժ դարձավ Սովետական Բանակը, որը արթուն հսկում է մեծ Հոկտեմբերի նվաճումները:

ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցումը Լենինի հանճարեղ կանխագծումների անշեղ կատարման արդյունքն է, Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականության և սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի արդյունքը:

Սովետական հասարակական ու պետական կարգի հզորությունն ու անպարտելիությունը նոր ուժով դրսևորվեցին Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Ոգեշնչված լենինիզմի մեծ գաղափարներով՝ սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ջախջախեց հիտլերյան Գերմանիային և իմպերիալիստական Ճապոնիային։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական ժողովուրդը հաղթահարեց պատերազմի հետևանքով ստեղծված խոշոր դժվարությունները, արագորեն վերականգնեց երկրի էկոնոմիկան և ձեռնամուխ եղավ սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու գործին։

Ինչպես միշտ, այնպես էլ այժմ, մեզ առաջնորդում է լենինիզմի անմահ ուսմունքը։ Կոմունիստների, մեր բոլոր աշխատավորների համար ոգեշնչման անսպառ աղբյուր է լենինիզմը, որի ամենահաղթ ուժը և կենսունակությունը նորից վառ կերպով դրսևորվեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարում։

Կոմունիստական պարտիայի, սովետական ժողովրդի, ամբողջ առաջավոր մարդկության կյանքում խոշոր պատմական ի-



րադարձություն հանդիսացավ ՍՄԿՊ XX համագումարը, որը հանրագումարի բերեց Սովետական Միության համաշխարհային պատմական հաղթանակները, մշակեց մեր երկրի հետագա զարգացման հոյակապ ծրագիրը։ Համագումարը նշեց, որ անցած հնգամյակում ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքը ավելացել է 85 տոկոսով, ընդսմին արտադրության միջոցների արտադրությունը աճել է 91 տոկոսով, իսկ մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքի ընդհանուր ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 2,2 անգամ։ 1955 թվականին 3,2 անգամ ավելի շատ արդյունաբերական արտադրանք է արտադրվել, քան 1940 թվականին։ Պարտիայի և կառավարության ընդունած խոշոր միջոցառումների շնորհիվ պայմաններ են ստեղծվել սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար։ Ծանր ինդուստրիայի հաջող զարգացումը և գյուղատնտեսության արտադրանքի աճը հնարավորություն են տվել ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը հնգամյակում ավելացնել 76 տոկոսով, որը ավելի քան 2 անգամ գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։

Համագումարը, որպես ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի գլխավոր խնդիրներ առաջադրեց՝ ծանր արդյունաբերության առավել զարգացման, տեխնիկական անընդհատ պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձրացման բազայի վրա ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա հզոր աճ, իրականացնել գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելք և այդ հիման վրա հասնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի նշանակալի բարձրացման։ Հնգամյակի ընթացքում արդյունաբերական արտադրանքի աճը սահմանվել է մոտավորապես 65 տոկոս, ըստ որում արտադրության միջոցների արտադրության աճը՝ 70 տոկոս, սպառման առարկաների արտադրությանը՝ 60 տոկոս։

Վեցերորդ հնգամյակի կենսագործումը մի խոշոր քայլ կլինի սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին։

Հնգամյակի ընթացքում սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում նոր խոշոր հաջողություններ ձեռք կբերի նաև հայ ժողովուրդը, որը լենինիզմի գաղա-



փարների շնորհիվ և ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնությամբ, հիմնովին վերափոխել է իր երբեմնի ավերակ երկիրը։ Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը 1956—1960 թվականներին կավելանա մոտ 1,7 անգամ։ Կավարտվի Սևան-Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը, կսկսվի Տաթևի հիդրոէլեկտրակայանի կառուցումը։ Կկառուցվեն նաև մի շարք նոր գործարաններ։ Զգալի չափով կավելանա գյուղատնտեսության արտադրանքը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը, որը լենինիզմի հաղթարշավն էր, վճռականապես դատապարտեց անհատի պաշտամունքը որպես մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ երևույթ։ Անհատի պաշտամունքը տանում էր դեպի պարտիայի և ժողովրդական մասսաների դերի նսեմացում, որը չէր կարող լուրջ վնաս չհասցնել մեր հասարակության հետագա առաջընթացին։ Այդ պաշտամունքը նսեմացնում էր պարտիայի մեջ կոլեկտիվ ղեկավարության դերը, հանգեցնում լուրջ վրիպումների աշխատանքի մեջ։ Համագումարը պարտիայի Կենտրոնական Կոմիտեին հանձնարարեց «... չթուլացնել պայքարը

անհատի պաշտամունքի մնացուկների դեմ, իր ամբողջ գործունեության մեջ ելնել այն բանից, որ նոր կյանքի իսկական կերտողները Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող ժողովրդական մասսաներն են»։

Ինչպես Կ. Մարքսին ու Ֆ. Էնգելսին, այնպես էլ Վ. Ի. Լենինին միշտ խորթ է եղել անհատի պաշտամունքը։ Նրանք բոլորն էլ կծու ծաղրի են ենթարկել մանր բուրժուական, քաղքենիական այն գծերը, որոնք հատուկ են պարծենկոտներին։ Լենինը գրում էր, որ հիմար, խայտառակ և ծիծաղելի է ամեն մի գոռոզացած մարդու վիճակը։

Լենինը անհաշտ պայքար է մղել բոլոր նրանց դեմ, ովքեր խեղաթյուրում էին պատմության մատերիալիստական ըմբռնումը, առանձին «անհատների», «հերոսների» վերագրելով այն, ինչ կատարում են ժողովրդական մասսաները։ Նա նշում էր, որ ժողովրդական մասսաներն են պատմության իսկական կերտողները և նրանց նախաձեռնությամբ, ստեղծագործական ակտիվությամբ էլ պայմանավորված է կոմունիզմի հաղթանակի գործը։ «Մասսան,— սովորեցնում էր Լենինը,—իրավունք պետք է ունե-



նա ընտրելու իր պատասխանատու ղեկավարներին։ Մասսան իրավունք պետք է ունենա փոխելու նրանց, մասսան իրավունք պետք է ունենա իմանալու և ստուգելու նրանց գործունեության յուրաքանչյուր ամենափոքրիկ քայլը։ Մասսան իրավունք պետք է ունենա մասսայի անդամ բոլոր բանվորներին, առանց բացառության, առաջ քաշելու տնօրինող ֆունկցիաների։ Սակայն այդ ամենևին չի նշանակում, որ կոլեկտիվ աշխատանքի պրոցեսը կարող է մնալ առանց որոշակի ղեկավարության, առանց ղեկավարի պատասխանատվությունը ճիշտ սահմանելու, առանց ամենախիստ կարգ ու կանոնի, որն ստեղծվում է ղեկավարի կամքի միասնությամբ»։

Անհատի պաշտամունքի դեմ պայքարելու հետ միասին, չպետք է մոռանալ, որ մարքսիզմ-լենինիզմին խորթ են մանր-բուրժուական անարխիստական հայացքները, որոնք ժխտում են մասսաների ղեկավարների, կազմակերպությունների դերը։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն վճռական միջոցներ ձեռք առավ պարտիական կյանքի լենինյան նորմաները վերականգնելու համար։ Պարտիայի միջոցառումները՝ անհատի պաշտամունքի դեմ մղվող պայքարը և

ղեկավարության լենինյան սկզբունքների վերականգնումը բարձրացրին աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը և նախաձեռնությունը, նրանց հուանդն ուղղեցին տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրները անշեղորեն կատարելու գործին:

Լենինիզմի ոգով է տոգորված մեր պարտիայի և կառավարության ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականությունը:

Կոմունիստական պարտիան իր խաղաղասիրական քաղաքականության մեջ ղեկավարվում է լենինյան այն ցուցումով, որ աշխարհում հնարավոր է երկու սիստեմների՝ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների խաղաղ գոյակցությունը և մրցակցությունը: Սովետական Միությունը վճռականապես պաշտպանում է այն դեմոկրատական սկզբունքը, որ յուրաքանչյուր ժողովուրդ, մեծ թե փոքր, իրավունք ունի և կարող է ինքը վճռել իր բախտը:

Խոշոր տեսական և պրակտիկ նշանակություն ունի տարբեր երկրների՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ձևերի բազմազանության վերաբերյալ լենինյան դրույթը, որ ստեղծագործորեն զարգացվեց ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի առաջին քարտուղար





ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման մեջ պարտիայի XX համագումարում: Ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների փորձը լիովին հաստատում է, որ անցումը կապիտալիզմից սոցիալիզմին կարելի է իրագործել առանց քաղաքացիական պատերազմի: Ընդհանրացնելով միջազգային ռևոլյուցիոն շարժման և ժողովրդական դեմոկրատիայի երկրների փորձը՝ պարտիայի XX համագումարում զարգացվեց պրոլետարական ռևոլյուցիայի լենինյան թեորիան:

Ինչպես մարգարեաբար կանխատեսում էր Լենինը, ժամանակակից դարաշրջանում միջազգային զարգացման գլխավոր, բնորոշ գիծը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի անշեղ աճն է, իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերի թուլացումը: Սոցիալիզմն արդեն դուրս է եկել մի երկրի շրջանակներից և դարձել համաշխարհային սիստեմ: Կապիտալիզմը անզոր գտնվեց խանգարելու այդ համաշխարհային պատմական պրոցեսը:

«Մարդկության համար,— ասում էր Լենինը,— սոցիալիզմից դուրս փրկություն չկա պատերազմներից, սովից և դեռ էլի միլիոնավոր ու միլիոնավոր կործանումից»:

Մեծատաղանդ բանաստեղծ Ե. Չարենցը Լենինի մասին գրել է.

«Դասակարգը
Դար դարի հետևից
Կերտել է Իլյիչին։
Դասակարգը
Դար դարի հետևից
Հյութեր է նյութել։
Անգամ ջրկիրը Տիբեթի
Տվել է Իլյիչի ուղեղին
Մի թել»։

Լենինի հանճարը իր մեջ մարմնավորում էր ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկության լավագույն հույսերը, իղձերը և ձգտումները։ Այժմ ամբողջ աշխարհում հաղթականորեն տարածվում են նրա գաղափարները, նորանոր միլիոնների համախմբելով մարքսիզմ-լենինիզմի անպարտելի դրոշի ներքո։

Վ. Ի. Լենինն ապրում է Կոմունիստական պարտիայի, սովետական ժողովրդի մեծ գործերում։ Լենինիզմի ուսմունքը հզոր ազդեցություն է թողնում համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա, լուսավորելով մարդկության առաջընթացը դեպի ապագան, դեպի կոմունիզմ։

---

# ԼԵՆԻՆԻԶՄԸ ԵՐԿՈՒ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## Վ. ՖԵԴԻՆԻՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը ՍՄԿԿ ԿԿ-ի հաշվետու զեկուցման առթիվ ընդունած բանաձևում ընդգծեց, որ Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր գիծը եղել է և մնում է սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության մասին լենինյան սկզբունքը։ Պարտիայի բարձրագույն ղեկավարող օրգանի այս ցուցումը հենվում է լենինիզմի թեորիական կարևորագույն դրույթների վրա, կապիտալիստական երկրների հետ Սովետական Միության հարաբերությունների ամբողջ պատմության վրա, ժամանակակից միջազգային իրադրության մարքսիստական-լենինյան խոր վերլուծության վրա։

Վ. Ի. Լենինը սահմանեց, որ իմպերիալիզմն իրենից ներկայացնում է կապիտալիզմի զարգացման բարձրագույն և վերջին ստա-

դիան։ Նա ապացուցեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում տեղի է ունենում կապիտալիստական երկրների տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափության ուժեղ սրում։ Ելնելով հասարակական զարգացման այս օրենքից, Լենինը մշակեց սոցիալիստական ռևոլյուցիայի նոր թեորիա, հիմնավորեց սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը սկզբում փոքրաթիվ, կամ նույնիսկ մեկ, առանձին վերցրած, կապիտալիստական երկրում։

Սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան թեորիան ոչ միայն ռևոլյուցիոն հեռանկար բացեց առանձին երկրների պրոլետարների համար և նրանց նախաձեռնությունը բորբոքեց սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար մղվող պայքարում, այլև նոր ձևով դրեց կապիտալիզմի անխուսափելի կործանման հարցը։ Միանգամայն ակնհայտ է, որ եթե համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիան զարգանում է առանձին երկրների՝ իմպերիալիստական սիստեմից անջատվելու ճանապարհով, ապա կապիտալիզմի կրախը և սոցիալիզմի հաղթանակն իրենցով լցնում են մի ամբողջ պատմական դարաշրջան, որի ընթացքում երկրագնդի վրա



միաժամանակ գոյություն ունեն սոցիալիստական և կապիտալիստական երկրներ։

Հետևաբար, երկու սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցության գաղափարի հիմքը դրվել է Լենինի կողմից դեռևս նախքան Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը և աշխարհում առաջին սոցիալիստական պետության երևան գալը։

Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիան սկիզբ դրեց կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինելու ժամանակաշրջանին։ Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հետևանքով աշխարհը բաժանվեց երկու հակադիր սիստեմների։ Կապիտալիզմի և սոցիալիզմի միաժամանակյա գոյությունը դարձավ փաստ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո երկու սիստեմների խաղաղ գոյակցության սկզբունքն իր հետագա զարգացումը գտավ Վ. Ի. Լենինի աշխատություններում և ելույթներում։Այդ սկզբունքը դառնում է Լենինի կողմից ստեղծված և նրա կողմից ղեկավարվող սոցիալիստական պետության ամբողջ արտաքին քաղաքականության հիմքը։

Խաղաղ գոյակցության մասին Սովետական պետության բռնած կուրսը իր արտա-

հայտությունը գտավ արդեն այդ պետության առաջին օրենսդրական ակտում։ Խաղաղության մասին պատմական Դեկրետում, որը գրվեց մեծ Լենինի ձեռքով և ընդունվեց Սովետների Համառուսական II համագումարի կողմից, Սովետական կառավարությունը բոլոր կռվող երկրներին առաջարկեց անմիջապես դեմոկրատական խաղաղություն հաստատել։ Այդ ժամանակից սկսած Սովետական պետության արտաքին քաղաքականությունը անփոփոխ կերպով հիմնվում է սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքի վրա։

Ելնելով պատմական զարգացման օրինաչափությունների վերլուծությունից, Վ. Ի. Լենինը ապացուցեց կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների երկարատև խաղաղ գոյակցության հնարավորությունն ու անհրաժեշտությունը։ 1921 թվականի դեկտեմբերին ելույթ ունենալով Սովետների Համառուսական 9-րդ համագումարում, նա ասաց. «Սակայն հնարավո՞ր է, արդյոք. առհասարակ, որ սոցիալիստական ռեսպուբլիկան գոյություն ունենա կապիտալիստական շրջապատման մեջ... Որ այդ հնարավոր է քաղաքական և ռազմական տեսակետից, այդ



ապացուցված է, այդ արդեն փաստ է» (Երկեր, հատ. 33, էջ 167)։

Լենինը բազմիցս ընդգծում էր, որ սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը նկատի ունի նրանց փոխադարձաբար չհարձակվելը և միմյանց ներքին գործերին չմիջամտելը։ 1920 թվականի փետրվարին «Նյու-Յորք իվնինգ ջորնել» թերթի թղթակցի այն հարցին, թե որո՞նք են խաղաղության հիմունքները Միացյալ Նահանգների և Սովետական Ռուսաստանի միջև, Վ. Ի. Լենինը հայտարարեց. «Թող ամերիկյան կապիտալիստները մեզ ձեռք չտան։ Մենք նրանց ձեռք չենք տա» (Երկեր, Հատ. 30, էջ 465)։

1919 թվականի աշնանը, պատասխանելով ամերիկյան «Չիկագո դեյլի Նյուս» թերթի թղթակցի այն հարցին, թե Սովետական Միությունը պատրա՞ստ է արդյոք երաշխավորելու, որ ինքը բացարձակ կերպով չի միջամտի մյուս երկրների ներքին գործերին, Լենինը գրել է. «Մենք պատրաստ ենք այդ երաշխավորել» (Երկեր, Հատ. 30, էջ 43)։

Լենինը գրպարտիչներ էր համարում և մերկացնում էր նրանց, ովքեր բոլշևիկներին մեղադրում էին ուրիշ երկրների վզին ուժով սոցիալիստական կարգեր փաթաթելու մտա-

դրության մեջ։ Նա նշում էր, որ ռևոլյուցիան ուրիշ երկրներում «առաջ մղելու» թեորիան կրնթանար մարքսիզմից լիովին կտրված, որովհետև մարքսիզմը միշտ ժխտել է ռևոլյուցիաների «առաջ մղումը», որոնք զարգանում են ռևոլյուցիաներ առաջացնող դասակարգային հակասությունների սրության հասունացմանը համընթաց։

«Ռևոլյուցիաները,— գրել է Լենինը,— պատվերով չեն կատարվում, չեն նախատեսվում այս կամ այն մոմենտի համար, այլ հասունանում են պատմական զարգացման պրոցեսում և ճայթում մի ամբողջ շարք ներքին ու արտաքին պատճառների կոմպլեքսով պայմանավորված մոմենտին» (Երկեր, Հատ. 27, էջ 686)։

Վ. Ի. Լենինը բազմիցս խոսել է Սովետական Միության և կապիտալիստական պետությունների միջև տնտեսական փոխադարձորեն շահավետ կապերի հնարավորության և անհրաժեշտության մասին։ 1919 թվականի աշնանը «Ամերիկյան բանվորներին» նամակում Լենինը մատնանշել է, որ Սովետական Ռուսաստանի և կապիտալիստական երկրների միջև՝ խելամիտ պայմաններով, գործարար առևտրական հարաբերությունները հնարավոր և ցանկալի են «այն ժամանա-



կաշրջանի ընթացքում, երբ կողք-կողքի գոյություն կունենան սոցիալիստական և կապիտալիստական պետությունները» (Երկեր, Հատ. 30, էջ 28)։

Լենինը միաժամանակ ընդգծում էր, որ տնտեսական օբյեկտիվ անհրաժեշտության ղորությամբ՝ իրենց սեփական շահերից ելնելով, կապիտալիստական պետությունները ստիպված են առևտրական և տնտեսական այլ հարաբերություններ հաստատել Սովետական պետության հետ։

Սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների խաղաղ գոյակցությունը նշանակում է նրանց միջև տնտեսական մրցակցության անհրաժեշտություն։ Վ. Ի. Լենինը կանխատեսում էր, որ այդ մրցության մեջ կհաղթանակի սոցիալիստական սիստեմը, շնորհիվ կապիտալիզմի նկատմամբ իր ունեցած վճռական առավելությունների։

Երկու սիստեմների խաղաղ գոյակցության մասին այս դրույթը, որն առաջ է քաշել և թեորիապես հիմնավորել է Վ. Ի. Լենինը, դարձել է սովետական պետության արտաքին քաղաքականության արմատական սկզբունքը։ Լենինյան այդ սկզբունքով են ղեկավարվում Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը։

Հետևելով մեծ Լենինի պատգամներին, Սովետական Միությունը հետևողականորեն պայքարում է կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար, կողմնակից է սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցությանը։

Ճիշտ է, ՍՍՌՄ գոյության ժամանակամիջոցում իմպերիալիստները շատ անգամ զինված հարձակում են գործել Սովետական պետության վրա, փորձելով մեր երկրում վերականգնել կապիտալիստական կարգերը։ Եվ, իհարկե, մեր մեղքով չէր, որ մենք ստիպված էինք զենքը ձեռքներիս պաշտպանել մեր ազատությունն ու անկախությունը։ Սովետական պետությունը միշտ ձգտել է կապիտալիստական երկրների հետ հաստատել խաղաղ, բարի դրացիական հարաբերություններ։ Սովետական Միության ձգտումը խաղաղության և բոլոր երկրների հետ՝ անկախ իրենց սոցիալ-տնտեսական սիստեմների, բարեկամական համագործակցության, ելնում է հենց սոցիալիստական պետության բուն էությունից։ Մեր հասարակարգում չկան դասակարգեր կամ հասարակական խմբեր, որոնք հարստանային պատերազմից և սպառազինության մրցավազ-



քից։ Սովետական պետությունը երբեք իր առջև չի դնում և չի կարող դնել այնպիսի նպատակներ, ինչպես արտաքին շուկաների, հումքի և էժան բանվորական ուժի զավթումը։ Մեր երկիրը, որտեղ լիկվիդացված են կապիտալիստական սեփականությունը և շահագործող դասակարգերը, հաստատվել է սոցիալիստական էկոնոմիկան, որը ստեղծել է բոլոր հնարավորությունները անընդհատ առաջխաղացման համար, պատերազմի կարիք չի զգում։ Սովետական Միությունը շահագրգռված է խաղաղությամբ, որովհետև խաղաղությունը լավագույն հնարավորություններ է ստեղծում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար։

Կապիտալիստական երկրներում կան խմբեր ու դասակարգեր, որոնք շահագրգռված են իմպերիալիստական պատերազմների նախապատրաստմամբ և սանձազերծմամբ։ Իմպերիալիստները շատ անգամ են փորձել ռազմական ուժով կասեցնել սոցիալիզմի աճը երկրագնդում։ Սակայն նրանք անզոր գտնվեցին խանգարելու այդ համաշխարհային պատմական պրոցեսին։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի շրջանակներից և վերածվեց համաշխարհա-

յին սիստեմի։ Տարբեր օրենքներով, տարբեր ուղղություններով զարգացող համաշխարհային երկու հակադիր տնտեսական սիստեմների միաժամանակյա գոյությունը անխախտելի փաստ է դարձել։

Բնականաբար այդ երկու հակադիր սիստեմների միջև անխուսափելի են տարաձայնությունները և վեճերը։ Ամբողջ հարցը նրանումն է, թե դրանք ինչպես պետք է լուծվեն։ Սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների միջև շատ տարիների ընթացքում գոյություն ունեցող հարաբերությունները վկայում են, որ վիճելի հարցերը հնարավոր է լուծել խաղաղ ճանապարհով։ Այդ հնարավորությունն այժմ, քան երբևէ մեծ է, քանի որ աշխարհում կան հզոր ուժեր, որոնք լուրջ միջոցներ ունեն՝ ագրեսիվ ուժերը զսպելու և պատերազմի սանձազերծում թույլ չտալու համար։

ՍՍՌՄ-ի վարած լենինյան խաղաղասիրական քաղաքականությունը բացահայտորեն դուր չի գալիս արևմտյան երկրների մի քանի քաղաքագետների։ Փորձելով ջուր պղտորել ու թաքցնել իրենց ագրեսիվ պլանները, նրանք աղմկում են ՍՍՌՄ-ի «ագրեսիվ մտադրությունների» մասին։ Խաղաղ գոյակցության մասին լենինյան դրույթը քմահա-



ճորեն հակադրելով դասակարգային պայքարի հետևանքով կապիտալիզմի կործանման անխուսափելիության մասին մարքսիզմի-լենինիզմի դրույթին, նրանք և նրանց ձայնակիցները աղմկում են այն մասին, որ իբր սոցիալիստական պետությունները ձգտում են «արտահանել ռևոլյուցիաները»։

Բուրժուական պրոպագանդիստները, իհարկե, դիտավորյալ կերպով իդեոլոգիական պայքարի հարցերը շփոթում են պետությունների միջև եղած հարաբերությունների հարցերի հետ։ Մարքսիզմի-լենինիզմի կլասիկները միշտ պարզ և որոշակիորեն դեմ են արտահայտվել՝ այսպես կոչված ռևոլյուցիայի «արտահանմանը»։ Սոցիալիստական ռևոլյուցիաները հանդիսանում են այն երկրների ժողովուրդների ներքին գործը, որտեղ գոյություն ունեն կապիտալիստական կարգեր։ Իսկ կապիտալիզմի անխուսափելի կործանման վերաբերյալ մեր վստահությունը հիմնված է ոչ թե ուրիշ երկրներում դրսից ուժով կապիտալիստական կարգերը տապալելու դիտավորության վրա, այլ սոցիալիստական սիստեմի անվիճելի առավելությունների վրա։

Արտադրության սոցիալիստական եղանակի առավելությունը հաստատված է պատ-

մական զարգացման ամբողջ ընթացքում։ Վերցնենք, օրինակ, տնտեսական զարգացման տեմպերի պրոբլեմը։ Վերջին 26 տարիների ընթացքում (1930—1955 թվականներ) արդյունաբերական արտադրանքի աճի միջին տարեկան տեմպը ՍՍՌՄ-ում կազմել է 12,3 տոկոս, ԱՄՆ-ում՝ 3,3 տոկոս, Անգլիայում՝ 2,4 տոկոս, Ֆրանսիայում՝ 0,9 տոկոս։ Այս տվյալներից երևում է, որ Սովետական Միության սոցիալիստական էկոնոմիկան, որի հիմնական շարժիչ մոտիվը հանդիսանում է ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների լիակատար բավարարումը, կապիտալիստական երկրների էկոնոմիկայից մի քանի անգամ ավելի արագ է զարգանում։

Արդյունաբերական արտադրության աճի տեմպերով կապիտալիստական պետություններից զգալի չափով առաջ են անցել նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Արդյունաբերական արտադրության նախապատերազմյան մակարդակը 1955 թվականին Լեհաստանում գերազանցված է ավելի քան չորս անգամ, Բուլղարիայում՝ ավելի քան հինգ անգամ, Չեխոսլովակիայում՝ երկուսից ավելի անգամ, Հունգարիայում՝ երեք



և կես անգամ, Ռումինիայում՝ գրեթե երեք անգամ, Ալբանիայում՝ ավելի քան տասնըմեկ անգամ, ԳԴՌ-ում՝ ավելի քան երկու անգամ։ Աննախընթաց արագ տեմպերով է զարգանում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը։

Սոցիալիստական լագերի էկոնոմիկան իր զարգացման մեջ ամենաբարձր հաջողությունների է հասնում խաղաղ շինարարության ժամանակաշրջանում, այն ժամանակ, երբ, օրինակ, ԱՄՆ-ի էկոնոմիկան իր արտադրության ծավալը մեծացնում է գլխավորապես պատերազմական տարիներին։ 1927—1940 թվականների ընթացքում ՍՍՌՄ արդյունաբերությունը արտադրանքի թողարկումն ամեն տարի ավելացնում էր 18,6 տոկոսով, իսկ ԱՄՆ-ի արդյունաբերությունը՝ միայն 2 տոկոսով։ Պատերազմի տարիներին հսկայական ավերածությունների պատճառով մեր արդյունաբերությունը իջեցրեց արտադրության ծավալը, իսկ ԱՄՆ-ի արդյունաբերությունն իր արտադրությունն ավելացրեց 60 տոկոսով։ Հետպատերազմյան տարիներին դրությունը դարձյալ փոխվեց. ՍՍՌՄ արդյունաբերությունն արագ վերելք ապրեց, զարգացման իր տեմպերով շատ առաջ անցնելով ԱՄՆ-ի արդյունաբերությու-

նից։ 1948—1955 թվականների ընթացքում սովետական արդյունաբերությունն ամեն տարի արտադրանքի թողարկումն ավելացրել է 16,6 տոկոսով, իսկ ԱՄՆ-ի արդյունաբերությունը՝ միայն 4,1 տոկոսով։

Այս բանը համոզիչ կերպով վկայում է սոցիալիստական էկոնոմիկայի խաղաղ բնույթի մասին, այն մասին, որ մեր էկոնոմիկան կապիտալիզմի հետ խաղաղ մրցակցության ճանապարհին իր զարգացման մեջ ձեռք է բերում մեծ հաջողություններ։ Սովետական մարդիկ խորապես համոզված են այն բանում, որ այդ մրցության մեջ հաղթող կհանդիսանա սոցիալիստական սիստեմը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունն իրենց հերթին ձեռք են առնում այն բոլոր անհրաժեշտ միջոցները, որպեսզի գործնականում կիրառեն խաղաղ գոյակցության քաղաքականությունը, զարգացնեն և ամրացնեն բարեկամական հարաբերությունները բոլոր երկրների հետ։ Արտաքին քաղաքականության բնագավառում Սովետական Միության ամեն մի միջոցառում ուղղված է այն բանին, որ ձեռք բերի միջազգային հարաբերությունների լարվածության թուլացում, նպաստի խաղաղու-



թյան և ժողովուրդների անվտանգության ամրապնդմանը, բոլոր ժողովուրդների միջև վստահության ստեղծմանը և բարեկամական համագործակցության զարգացմանը։

Շնորհիվ խաղաղասիրական արտաքին քաղաքականության Սովետական Միությունը նվաճել է բոլոր երկրների ժողովրդական լայն մասսաների սերը և համակրանքը։ Այսօր նոր ուժով են հնչում Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ «մեր խաղաղ քաղաքականությանը հավանություն է տալիս երկրագնդի բնակչության վիթխարի մեծամասնությունը»։

Խաղաղ գոյակցության սկզբունքը քանի գնում միջազգային ավելի լայն ճանաչում է գտնում։ Այդ սկզբունքը սոցիալիստական լագերի երկրների արտաքին քաղաքականության հիմքն է հանդիսանում։ Այդ սկզբունքն արտաքին քաղաքականության մեջ ակտիվորեն է անցկացվում այնպիսի պետությունների կողմից, ինչպիսիք են Հնդկաստանը, Բիրման և մի շարք այլ պետություններ։ Տարբեր երկրների միլիոնավոր և միլիոնավոր մարդիկ համոզվում են, որ ժամանակակից պայմաններում կա միայն երկու ճանապարհ՝ կամ խաղաղ գոյակցությունը, կամ պատմության մեջ ամենաավերիչ պատե-

րազմը։ Եվ գնալով ավելի ու ավելի մեծ թվով ամենատարբեր համոզմունքների տեր մարդիկ արտահայտվում են խաղաղ գոյակցության օգտին, վճռականապես մերժելով պատերազմի ճանապարհը, դեպի որը ձըգտում են մղել մարդկությանը արևմտյան որոշ երկրների հակաժողովրդական ագրեսիվ շրջանները։

«Մենք գտնում ենք,— ասվում է պարտիայի XX համագումարին տրված ՍՄԿԿ ԿԿ-ի հաշվետու զեկուցման մեջ,— որ սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող երկրները կարող են ոչ միայն պարզապես գոյություն ունենալ մեկը մյուսի կողքին։ Պետք է ավելի հեռուն գնալ՝ դեպի հարաբերությունների բարելավում, դեպի նրանց միջև վստահության ամրապնդում, դեպի համագործակցություն»։

---

## ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԱՌԱՋԻՆ ՏԱՐՎԱ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը հոյակապ միջոցառումներ մշակեց մեր երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Համագումարը սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողների առջև խնդիր դրեց՝ 1960 թվականին հացահատիկի համախառն բերքը հասցնել 11 միլիարդ փթի և երկու-երկուսից ավելի անգամ բարձրացնել անասնաբուծական հիմնական մթերքների արտադրությունը։ Վեցերորդ հնգամյակում գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելանալու է մոտավորապես 70 տոկոսով։ Նոր հնգամյակում գյուղատնտեսության հետագա զարգացման համար մեծ աշխատանք է կատարվելու նաև մեր ռեսպուբլիկայում։ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունն ավելանալու է մոտավորապես 1,5 անգամ, միսը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, բրդինը՝ 1,8 ան-

դամ և այլն։ Այդ նույն ժամանակաշրջանում ռեսպուբլիկայում տոռգման ցանց կկառուցվի 39 հազար հեկտար տարածության վրա և ջրովի կդառնան 150 հազար հեկտար արոտավայրեր։ 1955 թվականի համեմատությամբ 1960 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում բամբակի հումքի արտադրությունն աճելու է 9 տոկոսով, ծխախոտինը՝ 11 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 28 տոկոսով։

Ոգեշնչված պարտիայի XX համագումարի պատմական որոշումներով մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները ջանք չեն խնայում նոր հնգամյակի առաջին տարվա գարնանացանը կարճ ժամանակում և որակական բարձր ցուցանիշներով կատարելու համար։ Դեռ անցյալ ամսվա վերջերին ռեսպուբլիկայի բոլոր մեքենա-տրակտորային կայանները ավարտեցին տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների ու գործիքների վերանորոգումները։ Այժմ ՄՏԿ-ները կոլտնտեսություններում հաջողությամբ առաջ են տանում գարնան գյուղատնտեսական աշխատանքները։

Ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններ գերազանց նախապատրաստությամբ սկսեցին գարնանացանը և շուտով



կավարտեն այն։ Կոտայքի շրջանի Ակունք գյուղի կոլտնտեսականները շրջանում առաջինն սկսեցին հացահատիկային կուլտուրաների ցանքը, որը գերազանցապես կատարվեց լավորակ սերմերով։ Մտնելով սոցմրցության մեջ նրանք սեղմ ժամկետում ավարտեցին գարնանացանը։ Նույն շրջանի Արամուս գյուղի կոլտնտեսականները արդեն ավարտել են ծխախոտի տաք ջերմոցների ցանքը։ Մտնելով սոցմրցության մեջ, նրանք պարտավորվել են այս տարի ամեն մի հեկտարից ստանալ 20 ցենտներ բերք։ Իջևանի շրջանի Ն. Աղդան գյուղի կոլտնտեսականները բազմակողմանի նախապատրաստությամբ են սկսում գարնանացանը։ Կոլտնտեսությունը ձեռք է բերել եգիպտացորենի անհրաժեշտ քանակությամբ կոնդիցիոն սերմացու և հանքային պարարտանյութ։ Կոլտնտեսության բոլոր բրիգադները մտել են սոցմրցության մեջ և պարտավորություն ստանձնել յուրաքանչյուր հեկտարից ստանալ 25—30 ցենտներ հացահատիկային բերք։ Ազիզբեկովի շրջանի Միկոյան և Գետափ գյուղերի կոլտնտեսությունները աշխատանքային 10 օրում ավարտեցին հացահատիկային կուլտուրաների ցանքը։ Ցանքը

կատարված է պարարտացված հողերում և տեսակավոր սերմերով։

Կոլտնտեսականները, մեխանիզատորները, գյուղատնտեսության մասնագետները ուղեցույց ունենալով պարտիայի 20-րդ համագումարի որոշումները, հենց այժմվանից վճռական պայքար են ծավալել նոր հնգամյակի առաջին տարում բարձր բերք ստանալու համար։

Ագիտատոր, հիշի՛ր, որ բարձր բերք ստանալու վճռական պայմաններից մեկը գարնանացանի հաջող անցկացումն է։ Ով գարնան գյուղատնտեսական աշխատանքները կկատարի ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում և անընդհատ կբարելավի մշակվող կուլտուրաների խնամքը՝ նա էլ կնվաճի բարձր բերք։

Գարնանացանի այս օրերին ագիտատորների խնդիրն է՝ պարտիական կազմակերպության ղեկավարությամբ, կոլտնտեսականների, սովխոզների և ՄՏԿ-ների աշխատողների լայն շրջանում ամենայն մանրամասնությամբ և նպատակասլաց կերպով պարզաբանել պարտիայի XX համագումարի որոշումները, ամբողջ աշխատանքը փոխադրել դաշտ, այնտեղ, ուր որոշվում է բարձր բերքի բախտը։ Խիստ անհրաժեշտ է, որ ագի-



տատորները հենց դաշտում պարզաբանեն կոլտնտեսությունների առջև դրված խնդիրները և այդ կապակցությամբ յուրաքանչյուր բրիգադայի, օղակի և կոլտնտեսականի ու մեխանիզատորի առաջիկա անելիքները գարնանացանի ընթացքում։

Գարնանացանը բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու համար մեր ագիտատորները պետք է կոլտնտեսություններում, սովխոզներում և ՄՏԿ-ներում լայնորեն ծավալեն նախամայիսյան սոցիալիստական մրցությունը։ Խնդիրն այն է, որ բոլորը ընդգրկվեն մրցության մեջ, բարձր բերքի համար մրցության դուրս գան բրիգադաները — բրիգադաների, օղակները — օղակների և կոլտնտեսականները միմյանց հետ։ Այդ դեպքում մրցությունը կլինի մասսայական և այն կընդգրկի գարնան գյուղատնտեսական աշխատանքների բոլոր բնագավառները։

Սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու հետ միասին կոլտնտեսային բազմաթիվ ագիտատորներ պետք է օգնեն մրցողներին ստանձնած պարտավորությունները ճիշտ ժամանակին կատարելու համար։ Կարևոր հարց է նաև այն, որ ագիտացիոն զրույցների ընթացքում ագիտատորներն ունկնդիրներին տեղ-

յակ պահեն մրցության արդյունքների և մանավանդ այն մասին, թե ով, ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունները։

Վեցերորդ հնգամյակի առաջին տարվա գարնանացանը գերազանց ցուցանիշներով կատարելու գործում մեծ դեր է խաղալու առաջավոր փորձի արմատավորումը։ Գյուղատնտեսության շատ առաջավորներ գործնականում ցույց են տվել այն ռեալ հնարավորությունները, որոնք ապահովում են հացահատիկային, բանջարա-բոստանային կուլտուրաների, բամբակի, ճակնդեղի, ծխախոտի, խաղողի, պտղատու այգիների և մշակվող գյուղատնտեսական մյուս կուլտուրաների առավել բարձր բերքատվությունը։ Հարկավոր է գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի դրական փորձը զրույցների միջոցով տարածել կոլտնտեսականների, սովխոզների և ՄՏԿ-ների աշխատողների մեջ, օգնել նրանց, որպեսզի նրանք օգտվեն առաջավորների փորձից և աշխատեն նրանց օրինակով։

Ինչպես միշտ, այնպես էլ գարնան գյուղատնտեսական աշխատանքների օրերին ագիտացիան պետք է սերտորեն կապել կյանքի հետ, պարտիայի կողմից մեր կոլտնտեսությունների, սովխոզների և ՄՏԿ-ների առ-



ջև դրված խնդիրների հետ։ Օրինակ, երբ ագիտատորը իր զրույցի ընթացքում խոսում է գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցման կամ 1960 թվականին երկրին 11 միլիարդ փութ հացահատիկ տալու մասին, անհրաժեշտ է հանգամանորեն խոսել նաև այն մասին, թե ինչ է արվում հենց իրենց կոլտնտեսությունում գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքն իջեցնելու և հացահատիկի բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։

Որպեսզի նոր հնգամյակի առաջին տարվա գարնան գյուղատնտեսական աշխատանքները կատարվեն անթերի, գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի XX համագումարի որոշումները պարզաբանելու, կոլտնտեսային արտադրության մեջ առաջավոր փորձն արմատավորելու, սոցիալիստական մրցությունը ծավալելու հետ միասին, լավ կլինի, որ ագիտատորներն ամեն մի զրույցի ընթացքում ունկնդիրների ուշադրությունը բևեռեն գարնանացանը սեղմ ժամկետում և բարձր որակով կատարելու գործում եղած թերությունների արագ կերպով լիկվիդացնելու հարցի վրա։ Չի կարելի ագիտացիոն զրույց անցկացնել միայն խոսելով մեր հա-

ջողությունների մասին, առանց բացահայտելու թերությունները։ Այդ կապակցությամբ ընկեր Ն. Ս. Խրուշչևը նշում է, որ...ագիտատորների որոշ մասը յուրացրել է միայն նվաճումների ու հաջողությունների մասին խոսելու սովորությունը և խուսափում է զրույցներից այն ժամանակ, երբ խոսք է բացվում թերությունների և դժվարությունների մասին։ Դա, իհարկե, իջեցնում է ագիտացիայի ներգործությունը և չի նպաստում աշխատանքի թերությունների վերացմանը։

Ինքնին հասկանալի է, թե բովանդակալից ու նպատակասլաց ագիտացիոն-բացատրական աշխատանքն ինչպիսի խոշոր նշանակություն ունի գարնանացանը ժամանակին և անթերի կատարելու համար։

Ամենօրյա ագիտացիոն-մասսայական աշխատանքի միջոցով օգնենք կոլտնտեսային աշխատավորներին նոր հնգամյակի առաջին տարվա գարնանացանը պատվով կատարելու համար։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## ՍՍՌՄ ԾԱՆՐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

**(Թվեր և փաստեր)**

Տարեցտարի բուռն վերելք է ապրում մեր մեծ երկրի ծանր արդյունաբերությունը։ Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը։

✪ Արտադրության միջոցների արտադրությունը նոր հնգամյակում ավելանալու է մոտ 70 տոկոսով։ Նոր հնգամյակի վերջում (1960 թ.) ՍՍՌՄ-ում կարտադրվի չուգուն՝ 53 միլիոն տոննա, պողպատ՝ 68,3 միլիոն տոննա, գլանվածք՝ 52,7 միլիոն տոննա, ածուխ՝ 593 միլիոն տոննա, նավթ՝ 135 միլիոն տոննա, գազ՝ 40 միլիարդ խորանարդ մետր, էլեկտրաէներգիա՝ 320 միլիարդ կիլովատ ժամ, այդ թվում 59 միլիարդ կիլովատ ժամ հիդրոէլեկտրոէներգիա։

✪ 1960 թվականին մեր երկրում կարտադրվի մետալուրգիական սարքավորում՝ 280 հազար տոննա, քիմիական սարքավորում՝ 208 հազար տոննա, նավթաապարատուրա՝ 120 հազար տոննա, ինչպես նաև մեծ քանակությամբ շոգետուրբիններ և գազատուրբիններ և այլն։

✪ 1960 թվականին արտադրվելու են 200 հազար

հատ մետաղահատ հաստոցներ, 25,8 հազար հատ դարբնոցա-մամլակային մեքենաներ, 7 միլիարդ ռուբլու գործիքներ ու նրանց համար պահեստամասեր, 650 հազար հատ ավտոմոբիլներ, 322 հազար հատ տրակտորներ, 550 հատ էլեկտրաքարշեր, 1.630 հատ ջերմաքարշեր, 52 հազար հատ մագիստրալային ապրանքատար վագոններ, 2.800 մագիստրալային մարդատար վագոններ։

✪ Հնգամյակի ընթացքում զգալիորեն ընդարձակվելու է ատոմային էներգիայի օգտագործումը խաղաղ նպատակների համար։ 1956—1960 թվականներին կառուցվելու է 2—2,5 միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ ատոմային էլեկտրակայաններ։ Կառուցվելու են ատոմային շարժիչ ունեցող սառցահատ և տրանսպորտային նպատակների համար ատոմային ուժային հարմարանքներ։ Ատոմային էներգիան լայն կերպով օգտագործվելու է արդյունաբերության, գյուղատնտեսության, բժշկության մեջ և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում։

✪ Արտադրության լավ կազմակերպման և արտադրական կարողությունների լրիվ օգտագործման շնորհիվ նախատեսված է ստանալ պողպատի արտադրանքի աճի առնվազն 47 տոկոսը, չուգունի 35 տոկոսը, սև մետաղների գլանվածքի 40 տոկոսը, ռաֆինացված պղնձի 42 տոկոսը, ցինկի 47 տոկոսը, կապարի 34 տոկոսը, ալյումինի 20 տոկոսը, նիկելի 60 տոկոսը, ածխի 35 տոկոսը, սպիտակ նավթամթերքների 25 տոկո-



սը, մետաղահատ հաստոցների 65 տոկոսը, ավտոմոբիլների 55 տոկոսը, տրակտորների 69 տոկոսը և այլն։

✪ Հնգամյակի ընթացքում նվազ լեգիրացված պողպատի արտադրությունն ավելանալու է մոտավորապես 17 անգամ, դինամոյի պողպատինը՝ 97 տոկոսով, տրանսֆորմատորային պողպատինը՝ 2,1 անգամ, թիթեղագլանվածքինը՝ 85 տոկոսով և այլն։ 1960 թվականին, 1955 թվականի դիմաց էլեկտրապողպատի ձուլումը բարձրանալու է 79 տոկոսով, կոքսի ստացումը՝ 48 տոկոսով, երկաթի հանքաքարի հանույթը՝ 59 տոկոսով։

✪ Վեցերորդ հնգամյակում կապիտալ շինարարության հաշվին արտադրական կարողություններ կգործարկվեն մոտավորապես 16,8 միլիոն տոննա չուգունի, 15,8 տոննա պողպատի, 16,3 միլիոն տոննա գլանվածքի և 84 միլիոն տոննա երկաթի հանքաքարի համար։ Չժանգոտվող պողպատի և ջերմադիմացկուն համաձուլվածքների արտադրության կարողություններն ավելանալու են 3,2 անգամ։

✪ 1955 թվականի համեմատությամբ 1960 թվականին զգալի չափերով ավելանալու է գունավոր մետաղների արտադրությունը. ռաֆինացված պղնձի արտադրությունը՝ 60 տոկոսով, ալյումինինը՝ 2,1 անգամ, կապարինը՝ 42 տոկոսով, ցինկինը՝ 77 տոկոսով, նիկելինը՝ 64 տոկոսով, մոլիբդենինը՝ 2 անգամ, վոլֆրամի կոնցենտրատներինը՝ 57 տոկոսով և այլն։

✪ Հնգամյակի ընթացքում նախատեսվում է նավթի

հանույթի ու վերամշակման աճի բարձր տեմպեր։ Սպիտակ նավթամթերքների արտադրությունն ավելանալու է մոտ 2 անգամ և քսայուղերի արտադրությունը՝ 1,8 անգամ։ Ժողովրդական տնտեսության մեջ ավելանալու է գազի օգտագործումը, որպես քիմիական հումք ու վառելիք, ինչպես նաև կենցաղային կարիքների համար։ Հնգամյակի ընթացքում գազի հանույթն ու արտադրությունը ավելանալու է մոտ 3,9 անգամ, իսկ գազի արդյունաբերական պաշարների աճը կազմելու է 85—90 տոկոս։

✪ Նոր հնգամյակում մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքի արտադրությունն ավելանալու է մոտավորապես 80 տոկոսով։ Ագրեգատային հաստոցների արտադրությունն ավելանալու է 2,4 անգամ, ավտոմատ և կիսաավտոմատ սարքավորումների արտադրությունը՝ մոտ 5 անգամ։ Առավել պրոգրեսիվ մետաղահատ հաստոցների տեսակարար կշիռը հասնելու է առնվազն 50 տոկոսի։ Դարբնոցա-մամլակային ծանր մեքենաների թողարկումն ավելանալու է առնվազն 4 անգամ և ձուլման սարքավորմանը՝ 8 անգամ։ Գլանվածքային արտադրության թողարկումն ավելանալու է 82 տոկոսով։

✪ Լուրջ կերպով զարգանալու է ռադիոտեխնիկական և գործիքաշինական արդյունաբերությունը։ Հնգամյակի տարիներին գործիքների և ավտոմատացման միջոցների պատրաստումն ավելանալու է մոտ 3,5 անգամ, այդ թվում տեխնոլոգիական պրոցեսների վե-



րահսկման ու ավտոմատ կարգավորման գործիքներինը՝ 4 անգամ, հաշվա-վերլուծական մեքենաներինը՝ 4,5 անգամ, էլեկտրաչափիչ գործիքներինը՝ 3,6 անգամ, օպտիկա-մեխանիկական գործիքներինը՝ 3 անգամ։ Վեցերորդ հնգամյակում երկրում կառուցվելու և գործարկվելու է գործիքաշինական 32 գործարան։

✪ Ավտոմոբիլային արդյունաբերության մեջ բեռնատար ավտոմոբիլների թողարկումը քանակապես ավելանալու է մոտ 32 տոկոսով, ավտոբուսներինը՝ 88 տոկոսով, մարդատար ավտոմոբիլներինը՝ 86 տոկոսով, ավտոմոբիլային և տրակտորային կցաններինը՝ 4,3 անգամ, ավտոմոբիլների պահեստամասերինը՝ 2,2 անգամ։ Կազմակերպվելու է մինչև 40—50 տոննա բեռնաբարձ կարողությամբ ինքնաթափ ավտոմոբիլների արտադրությունը։

✪ Ծանր արդյունաբերությունը բարձր զարգացման է հասել նաև մեր ռեսպուբլիկայում։ Օրինակ, միայն ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների թողարկվող արտադրանքի ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ ավելացել է 3,3 անգամ, քիմիական արդյունաբերության ձեռնարկություններինը՝ 2,7 անգամ, մեքենաշինության ձեռնարկություններինը՝ 3,4 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրանքը նույն ժամանակամիջոցում ավելացել է 2,3 անգամ։

✪ Վեցերորդ հնգամյակի ընթացքում մեր ռեսպուբլիկայում ամբողջ արդյունաբերության համախառն

արտադրանքն ավելանալու է մոտավորապես 1,7 անգամ, այդ թվում ռեսպուբլիկական արդյունաբերության՝ 1,6 անգամ, ցեմենտինը՝ 2 անգամ։

✪ Ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական պայմաններից մեկը էներգետիկան է։ Հնգամյակի ընթացքում էլեկտրաէներգիայի արտադրությունը ռեսպուբլիկայում ավելանալու է 1,3 անգամ։ Ավարտվելու է Սևան-Հրազդան կասկադի մնացած հինգ հիդրոէլեկտրակայանների, այն է՝ Արզնիի, Աթարբեկյանի, Երևանի, Նորագավիթի և Արգավանդի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը։

✪ Մեր ռեսպուբլիկայում նոր հնգամյակի տարիներին առանձնապես զարգանալու են մեքենաշինության, հաստոցաշինության, ինչպես նաև գործիքաշինության, էլեկտրատեխնիկական արդյունաբերության ճյուղերը։ Հայէլեկտրոգործարանի արտադրանքն ավելանալու է 3 անգամ։ Զգալիորեն ընդարձակվելու են Ձերժինսկու անվան հաստոցաշինական, Լենինականի հեծանիվի, Երևանի Կաբելի և էլեկտրատեխնիկական գործարանները։

✪ Վեցերորդ հնգամյակի ընթացքում ռեսպուբլիկայում կառուցվելու են մեքենաշինական մի շարք նոր խոշոր ձեռնարկություններ։ Ախտայի շրջանի Լուսավանում կառուցվելու է գործիքաշինական գործարան, հաստոցագործիքաշինական երկու գործարաններ Երևանում, Ավտոմոբիլային պահեստամասերի գործարան Լենինականում և մետաղամշակման գործարաններ Լենինականում և Կիրովականում։

---

## СОДЕРЖАНИЕ

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД

Стр.



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ



---

Խմբագիր՝ Գր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ



---

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 7 1956 г.**


ՎՖ 02367 Պատվեր 322 Տիրաժ 8950

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։